— Ի՞նչ շահ կրնայ ունենալ Ալմազեան, այսպիսի ամբաստանութիւն մը ընելէ, եթէ ճշմարիտ չէ։

*Պալըրա*.— Որպէս զի վարկաբեկէ մեզ եւ եղեռնադատ ատեանին առջեւ ըսէ թէ «այս մարդիկը կիրքով վկայութիւն կուտան ինծի դէմ»։ Ո՛չ մէկ ճշմարտութիւն կայ իր խօսքերուն մէջ։ Բնաւ ծեծի տեսարաններ չեն պարզուած, հազիւ կարճ կռիւ մը՝ ձեռնակապ մը անցընելու ատեն։

*Փաստաբանը*.— Ո՞րքան տեւեց այդ կռիւը։

*Պալըրա*.— Մէկ վայրկեան։

— Եւ ո՛չ աւելի։

— Մէկ կամ երկու վայրկեան։

*Փաստաբանը ուրիշ հարցումներ ալ ուղղեց Պալըրայի, զայն շփոթեցնելու համար։ Ոստիկանապետը ժխտական պատասխաններ տուաւ եւ կարգ մը հարցումներու պատասխանն ալ իր պետին՝ Պընուայի վրայ ձգեց։ Փաստաբանը կրկին ցաւ յայտնեց հարցաքննիչ դատաւորին, որ չէր հրաւիրած դատական ոստիկանութեան տնօրէնը։*

*Լրկրորդ հարցումին վրայ վրայ Պալըրա ըսաւ թէ Ալմազեան բնաւ չհարցաքննուեցաւ շաբաթէն կիրակի լուսնալիք գիշերը։*

*— Հապա՞ ինչպէս կ'ըլլայ որ առտուան թերթերը վայրկեանը վայրկեանին արձանագրած էին գիշերը տեղի ունեցած հարցաքննութիւնը։*

*— Չեմ գիտեր թէ թերթերը ի՛նչպէս ձեռք բերած էին այդ տեղեկութիւնները։*

*Այս խօսքերուն վրայ փակուեցաւ ունկնդրութիւնը։ Նըրբանցքին մէջ Ալմազեան համբուրեց իր կինն ու զաւակը, յետոյ տարուեցաւ Սանթէի բանտը։*

*Կը կարծուի թէ Ալմազեանի բողոքը չեղեալ պիտի նկատուի եւ խնդիրը պիտի փակուի վերջնապէս։*

**** Ձախ թերթերը զայրացած են այս առթիւ եւ հեգնական յօդուածներ կը հրատարակեն։*

*«Սուար» կը գրէ.— Պ. տը Ժանթիյի հարցաքննութիւնը ուժգին, տրամաբանական եւ ճշգրիտ կերպով հաստատեց թէ խորհրդաւոր ձեռքեր զարկած են խեղճ Ալմազեանի, թէ՝ տոքթ. Փօլի նկատած հարուածի հետքերը «ցնորքներ» էին։ Մէկ խօսքով, կարգ մը ուրախ «զարնող ոգիներ» գէշ կատակ մը ըրած են դատական ոստիկանութեան խստօրէն փակ կեդրոնին մէջ եւ Պ. տը Ժանթիյ չէ կրցած «նիւթականացնել» զանոնք, որովհետեւ ոչ մէտիում է, ո՛չ ալ նոյնիսկ ոգեհարց։*

*«Յարգելի դատաւորը կատարելապէս հաստատեց թէ դերձակ Ալմազեան զոհ գացած է բանդագուշանքի մը։ Ամէն մարդ գիտէ թէ կարծեցեալ «չարչարանք»ի գիշերը Պալըրա գրականութեամբ կը զբաղէր, Մապիյլ գնդախաղ կը խաղար, Շմիտ, որ համակ քաղցրութիւն է, առաջին հաղորդութեան հացկերոյթի մը գացած էր։ Այս գեր-հաստատուած իրողութեանց առջեւ, ո՞վ կրնայ հաւատալ Ալմազեանի ամբաստանութեանց…*

*Ու թերթը կ'եզրակացնէ.*

*— Գիտենք այսուհետեւ թէ արդարութիւնը խեղկատակութիւն մըն է այլեւս։ Շարունակենք — շարունակեցէք — մինչեւ այն օրը, երբ բարեմիտ հասարակութիւնը, որ արդէն սկսեր է շարժիլ Ալմազեանի խնդրին առթիւ, բրտօրէն պահանջէ անհրաժեշտ աւելը զարնել վարչութեան մը, որ ոչինչ ունի ճերմկցնելիք։*

## *Ուզունոֆ ձերբակալուած*

*Տրամայէն կը հաղորդեն թէ տեղական իշխանութիւնները ձերբակալած են պուլկար աւազակ Ուզունոֆը եւ իր ընկերներէն մէկը։*

*Պուլկար կառավարութիւնը հելլէն իշխանութիւններէն պահանջեց իրեն յանձնել յիշեալը։ Ինչպէս կը յիշուի, վերջերս Ուզունոֆի աւազակախումբը քանիցս եղեռնափորձեր կատարեց Պուլկարիոյ մէջ, յարձակելով կառախումբերու վրայ եւ անգամ մըն ալ՝ նախարարական ինքնաշարժերու վրայ։*

## ՄԱՆՐ ԼՈՒՐԵՐ

ԱԹԷՆՔԻ նախադատ ատեանը վճիռով մը լուծեալ հռչակեց միութենական համադաշնակցութիւնը, որ համայնավար պրոպագանդով կը զբաղէր։

ՊՈՒԼԿԱՐԻՈՅ Թագաւորն ու եղբայրը կիրիլ հասան Հռոմ, ներկայ ըլլալու համար իտալիոյ գահաժառանգի հարսնիքին։

ԹԱՇԿԷՆՏԻ մօտ 12 մէդր երկայնքի վրայ թումբ մը պայթեցաւ, ջուրը խուժեց մօտակայ գիւղի մը վրայ, ուր 60 տուներ ջրամոյն եղան քանի մը վայրկեանի մէջ։ Շատեր չկրնալով փախչիլ, խեղդուեցան։




*ԳՐՈՒԱԾՔՆԵՐ ՈՒՆԻՆ*

*Եղիշէ Արքեպսկ. Դուրեան, Բրօֆ. Աբրահամ Տէր Յակոբեան, Գարեգին Արքեպսկ. Յովսէփեանց, Տիկին Հայկանոյշ Մառք, Տիրայր Արքեպսկ. Տէր Յովհաննէսեան, Բրօֆ. Կ. Սողիկեան, Հայկ Աճէմեան, Ա. Նաւարեան, Օհան Կարօ, Հ. Տէվլէթեան, Օր. Նուարդ Գալըազեան, Մեսրոպ Նուպարեան, Հայր Վարդան վրդ. Հացունի, Հայր Ս. Երեմեան, Եդուարդ Տարօնեան, Եդուարդ Գօլանճեան, Ազատունի։*

Գին 1 տոլար կամ 25 ֆրանք

*Բոլոր ապսպրանքները կանխիկ։*

*Դիմել՝* ԱՐԱՊԵԱՆԻ
13 Bld. Edgar-Quinet
Colombes, (Seine):

## ՆՈՐ ՏԱՐԻՈՅ ԱՌԹԻՒ

*Աճապարեցէք ձեր նուէրները ստանալու Սեւունի գրատունէն*

գեկտ. եւ յունուար ամիսներուն նուէր կը տրուի բոլոր գնողներուն՝

քերական, երգարան, զրուցատրութիւն ֆրանս. լեզուի, առողջաբանական գիրքեր, ձայնագրուած երգեր, երազահան, դրօշմաթուղթ հայ թագաւորներու, լուսանկարներ գրական երեւելի անձերու եւ թագաւորներու, ինչպէս նաեւ զանազան գիրքեր, նաթ բինկէրթըն, Շէրլօք Հօլմս, Մակաբոյծը, Մելիքա Նուրի հանըմ, բռնի սիրուըտուք, Լուսանկարը, Աբուլալա Մահարի, երգեցողութիւն Ս. Պ., ճշմարտութիւն քէմալական թուրքիոյ մասին, Ալեքսիանոս, Աշըգ Ղարիպ, Աշըգ Գէրիմ, Շահ իսմայիլ եւն. եւն.:

Նուէրները կը տրուին եղած գնումներու քանակին համեմատ։

*Դիմել՝* Mme. Sévouni, 31 Rue Kléber, Issy les-Moulineaux, Seine, France.



## Հ. Յ. Դ.

*Փ Ա Ր Ի Զ*

Իթալիի *Աղբիւր Սերոբ խումբի ժողովը՝ այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին, 184 Ավընիւ Իթալի։ Ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։*

*Գ Ա Ւ Ա Ռ*

Լիոնի *Քեռի խումբի ժողովը՝ այս Հինգշաբթի իրիկուն ժամը 8ին Դաշնակցութեան Դրադարանը։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։ Ներկայ կ'ըլլայ շրջ. կոմիտէի ներկայացուցիչը։*

Լիոնի *Կայծակ խումբի ընկերները ստիպողաբար ժողովի կը հրաւիրուին վաղը Չորեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին Դրադարանի սրահը։*

Մարսէյլի *Քրիստափոր ենթակոմիտէի ժողովը՝ վաղը Չորեքշաբթի ծանօթ հաւաքատեղին։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է։*

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

*ԼԻՈՆԻ Բալուի և Յար.գիւղերու Միութեան ժողովը՝ այս Ուրբաթ իրիկուն ժամը 8ին ծանօթ հաւաքատեղին։*

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Տէր եւ Տիկին Վահան Գույումճեան եւ զաւակները, այլեւ տիկին Տիրուհի Տիրատուրեան եւ զաւակները խորին շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ կամ գրաւոր իրենց ցաւակցութիւնը յայտնեցին իրենց մօր՝ Այրի Տիկին ՄԱՐԻՅԷ ԳՈՒՅՈՒՄՃԵԱՆԻ՝ (Ծն. Պէշիրեան) մահուան առիթով։

Մարսէյլ

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

*Ա. Տատ., Վալապըը.— Ուրիշ տեղ հրատարակուած է արդէն։*
*Հ. Պազ., Փարիզ.— Դժբախտաբար ոչ։*

ՍՏԱՑԱՆՔ

վիլժիւիֆ, Ե. Յ.— 70 ֆր.,
Մարսէյլ, Պ. Ջ.— 100:
Անիէռ, Ա. Ճափարեան,— 140,
Սէն Ժէրմէն ան Լէյ, Մ. Պ.— 140:
Քլամառ, Գ. Ա.— 35:
Մարսէյլ, Ն. Չ.— 70:
Միլան, Տքթ. Ե. Ա.— 400:
Թուլուզ, Գ. Շ.— 300:
Լոն, Ա. Ա. — 100:
Մարսէյլ, Ա. Ա.— 130:
Մարսէյլ, Հ. Գ.— 140:



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant: H. STEPHAN





IMPRIMERIE -MASSIS- ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant: H. STEPHAN

